Խորտակելով կառավարութեան տրամադրութիւնը՝ Պասքեան շրջանին, հա- րաւային Սպանիոյ եւ Մատրիտի մէջ, ապստամբները կը յուսան քիչ ատենէն իրենց ամբողջ ուժը թափել Վալենցիոյի եւ Քաթալոնիոյ վրայ ։

*** Ալմերիայէն կը հեռագրեն (Իւմանիթէ) .— Փախչելով խոլեւդերման զօրքին առջեւ, որ Մալակայի գրաւումէն վերջը կը յառաջանայ դէպի արե- ւելք, շրջակայ քաղաքներու եւ գիւղերու բնակիչները Ալմերիա կը հասնին անվերջանալի կարաւաններով ։ Տեղական իշխանութիւնը անկարելին կը փոր- ձէ, պատսպարելու համար փախստականները ։ Կը հաշուեն թէ Ալմերիայի բը- նակչութիւնը, որ 50,000ը չէր անցներ, քանի մը օրուան մէջ բարձրացած է 200,000ի ։ Միջոցներ կը խորհուին, ծովեզերեայ զանազան քաղաքներու մէջ փոխադրելու համար փախստականներու այս ահագին բազմութիւնը ։

## Գերմանիոյ պատերազմը կարմիրներուն դէմ

Տոքթ. Կէօպէլս, Գերմանիոյ քարոզութեանց նախարարը, նոր ճառ մը խօսելով պոլշեւիկներուն դէմ, ազդարարեց.

— « Համայնավարութիւնը աւելի վտանգաւոր դարձած է, որովհետեւ կը ջանայ աւելի ճարպիկութեամբ գործել ։ Բայց Եւրոպայի ժողովուրդները արթննալու վրայ են ։ Կարմիր վտանգը ճանչցած են մասնաւորապէս Պելժիոյ, Սպանիոյ, Անգլիոյ եւ նոյնիսկ Ֆրանսայի մէջ ։ Մոսկուան ալ իր կողմէ կը ջանայ զինակիցներ ճարել, ճակատեցնելու համար այն պետութեանց դէմ ուր պարտուած է համայնավարութիւնը » ։

Յետոյ խօսելով միջազգային կացութեան վրայ, Տոքթ. Կէօպէլս պար- ծանքով յայտարարեց .

— « Մենք պատռեցինք այն խայտառակ վաւերաթուղթը որ կը կոչուի Վերսայլի դաշնագիր ։ Այդ բռնադատեալ պաշտօնագիրը հաստատեց թէ կ'ու- զէին Գերմանիոյ չալակը բեռցնել ինչ որ պատահած էր Եւրոպայի մէջ ։ Այսօր Գերմանիան դարձած է հզօր պետութիւն մը ։ Մենք պատերազմ չենք ուզեր ։ Առաջնորդը չուզեր ։ Ոչ ոք պատերազմ կ'ուզէ ։ Եթէ որ եւ է պետութիւն պա- տերազմ ուզէր, պիտի յայտարարէր, երբ մենք նոր կը սկսէինք վերազինուիլ ։ Այժմ ոչ ոք մտքէն կ'անցընէ յարձակիլ մեր վրայ, ոչ ալ մենք կ'ուզենք յարձա- կիլ ուրիշին վրայ ։ Հետեւաբար պատերազմ պիտի չըլլայ » ։

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ ՓԱԿԵՑ Պավարիոյ բոլոր հռոմէա- կան դպրոցները, հիմնուելով ժողովրդական քուէարկութեան մը վրայ ։ Նա- խապէս շատ մը դպրոցներ փակուած էին Միւնիխի մէջ եւ կը կառավարուէին իբրեւ նացիական վարժարաններ ։ Հռոմէական եկեղեցին բողոքագիր մը կը պատրաստէ ։

ԱՆՆԿԱՐԱԳՐԵԼԻ ԽԱՆԴԱՎԱՌՈՒԹԻՒՆ կը տիրէ Իտալիոյ մէջ, Փիէմոն- թէի իշխանուհին մանչ զաւակ մը ծնած ըլլալով ։ Նորածինը, որ Իտալիոյ գա- հաժառանգն է, կոչուեցաւ դուքս Նափոլիի ։ Անհամար բազմութիւն մը պաշ- չարած էր Նափոլիի պալատը, ժամ առաջ լսելու համար աւետիսը ։

ՄԵԾ ՑՈՒՑՈՒՄ կը տիրէ Ալզաս - Լօռէնի մէջ, դպրոցականներու տարի- քին բարձրացման առթիւ ։ Այս երկու գաւառները Ֆրանսայի կցուելէ ի վեր ազատութիւն կը վայելէին կրօնական դասեր տալու իրենց դպրոցներուն մէջ ։ Հիմա կառավարութիւնը կ'ուզէ որ հետեւին ամբողջ երկրին մէջ հաստատ- ուած օրէնքին ։ Սթրազպուրկի արքեպիսկոպոսը բուռն նամակ մը ուղղած ըլ- լալով, դիտողութիւն ստացաւ ։

ԱՐՏԱԴՐՈՒԹԵԱՆ ՏՈՒՐՔԻ (6 առհարիւր) յայտարարութեան համար տրուած պայմանաժամը փետրուար 15էն յետաձգուեցաւ փետրուար 28ի, ե- ղած խնդրանքներուն վրայ ։ Պաշտօնաթերթը այսօր, կիրակի, պիտի հրատա- րակէ այս նոր տուրքին գործադրութեան եղանակները ։ Ինչպէս յայտնի է, այս տուրքը հաստատուեցաւ գործառնութեանց տուրքին փոխարէն (2 առ հա- րիւր ալ՝ հողագործութեան համար) ։

ՓԱՐԻԶԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԱԿԱՆ ՈՍՏԱՆԻՆ ուսանողները երկրորդ անգամ ըլլալով պայքար բացած են հաստատութեան ճաշարանին դէմ եւ կը մերժեն հոն ճաշել ։ Կըսեն թէ կերակուրները անտանելի են եւ թէ պիտի շարունակեն դուրսը ճաշել, մինչեւ որ գոհացում տրուի ։

## ԶԻՆՈՒՈՐԱԳՐՈՒԹԵԱՆ ԽՆԴԻՐԸ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Մարսէյլի առաջնորդարանէն ստացած ենք հետեւեալ պաշտօնական յայ- տարարութիւնը, փետրուար 9 թուականով .—

Ի գիտութիւն եւ ի միամտութիւն մեր ժողովուրդին՝ պարտք կը զգանք յայտարարելու թէ Առաջնորդարանս իր կեդր. Վարչութեամբ եւ անոր նախա- գահով անտարբեր չէ գտնուած երբեք բոլոր այն հարցերուն վերաբերմամբ՝ որոնք կը շահագրգռեն վիճակիս Հայ համայնքը, եւ որոնց հնարաւոր լուծման բաւարար միջոցները չեն պակսիր իրեն ։

Ասոնց կարգէն է Հայ երիտասարդ տարագիրներու զինուորագրութեան յոյժ կենսական խնդիրը՝ որ ոչ թէ մասնակի — զինուորցուներու յատուկ — այլ ընդհանրական բնոյթ ունի . ուստի եւ առաջին օրէն զբաղեցուցած է նաեւ Առաջնորդարանս, որ չէ դանդաղած հաղորդելու իր տեսութիւններն ու թե- լադրութիւնները ձեռնհաս մարմիններու, եւ ասոնց միջոցով՝ պատկան իշ- խանութեանց ։

Առաջնորդարանիս փափաքն եւ ուղղութիւնն է եղած տեղի չտալ որ հարցը թնճկոտի անհարկի միջամտութիւններով եւ անպատասխանատու եւ անկչիռ ձեռնարկութիւններով՝ յաճախ զիրար խաչաձեւող ու չէզոքացնող, եւ թողուլ որ կեդրոնացած ոյժերու համերաշխ գործակցութեան մը ողին առաջնորդէ հարցը իր բնական ու տրամաբանական, այլեւ հնարաւորութեան սահմանին մէջ՝ իրաւունքի եւ արդարութեան հետ հաշտ լուծումի մը ։

Այդպիսի կեդրոնացած ոյժի մը արտայայտութիւնը կը նկատենք մենք Փարիզի Հայ Գաղթականաց զոյգ Գրասենեակներու համախորհուրդ նախնու- մով տարուած աշխատանքները, որոնց արդիւնաւորման համար օգտակար է եւ հրամայական զուսպ ու լուրջ կեցուածքը բոլոր հոսանքներուն եւ կազմակեր- պութիւններուն՝ օրինակելի եւ յարգանք պարտադրող կարգապահական ոգիի մը ներշնչումներուն տակ ։

Կը խնդրուի, ուրեմն, եւ կարեւորութեամբ կը յանձնարարուի համբե- րութեամբ եւ հանդարտութեամբ սպասել խնդրին բարւոք ելքին՝ որուն կը սիրենք հաւատալ, վստահ՝ Ֆրանսական կառավարութեան արդարադա- տութեան ։

Այրի տիկին Լուսիկ Զամասանեան, Մնացական եւ Արամ Զամասանեան, Մանուկ Զամասանեան (Յունաստան), Տէր եւ Տիկին Նազարէթ Քէչիչեան, Պ. Յովհաննէս Մակարեան (Ամերիկա), Այրի Տիկին Արաքսի Շահպազեան, Տէր եւ Տիկին Յակոբ Տիրաքեան (Յունաստան), Սէմէրճեան եղբարք (Յունաս- տան), Տէր եւ Տիկին Գալուստ Զամասարեան (Փօն տ'Օպնա), սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն իրենց սիրելի որդւոյն, եղբօր, քեռորդւոյն եւ ազ- գականին՝

## ԳԱԼՈՒՍՏ ԶԱՄԱՍԱՆԵԱՆԻ

դառնաղէտ մահը, որ տեղի ունեցաւ փետրուար 12ին երիտասարդ հասակին ։

Յուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ իր բնակարանին մէջ, 39, Rue de la Défense, Իսի լէ Մուլինօ, 15 փետրուար երկուշաբթի, կէսօրէ վերջ ժամը 2ին, ուրկէ հանգուցեալին մարմինը պիտի փոխադրուի Իսի լէ Մուլինոյի գերեզմա- նատունը ։

ԾԱՆՕԹ .— Մասնաւոր մահազդ ղրկուած չըլլալով, կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել ։





































**Le Gérant: H. STEPHAN**
Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme, PARIS (13)

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՄՈՍԿՈՒԱՅԷՆ Լոնտոն հասած լուրերու համաձայն, «մաքրագործումը» կը շարունակուի անխնայ: Ձերբակալուած են 2000 հոգի, որոնց մէջ կը գտնուին 50 բարձրաստիճան պաշտօնատարներ՝ ելմտական պաշտօնատունէն, երկաթուղիներու վարչութենէն եւն.։Մորհրդային 14 մեծ շրջաններու քար տուղարներէններկուքը ձերբակալուած են։Մորհրդային երկաթուղիներու15 շրջանային վերատեսուչներէն ինը ձերբակալուած են իբրեւ դաւաճան:

ԻՏԱԼԻԱ ԵՒ ԳԵՐՄԱՆԻԱ միեւնոյն լեզուն կը խօսին, յայտարարեց Տոքթ. Կէօպէլս, քարոզութեանց նախարարը, անգամ մը եւս շեշտելով համայնավարութեան դէմ կռուելու անհրաժեշտութիւնը: «Իտալիոյ մէջ իտալերէն կը խօսին, Գերմանիոյ մէջ՝ գերմաներէն. բայց մենք այն խոր համոզումն ունինք թէ Իտալիա եւ Գերմանիա միեւնոյն լեզուն կը խօսին»:

ԳԵՐՄԱՆԻՈՅ ԵՒ ՉԵԽՈՍԼՈՎԱՔԻՈՅ ՄԻՋԵՒ համաձայնութիւն մը կնքուեցաւ, գերման փոքրամասնութեանց մասին: Այս վերջինները այսուհետեւ պիտի կրնան ծառայել հանրային վարչութեանց մէջ, իրենց հաստատութիւնները աւելի կարեւոր գումարներ պիտի ստանան իբրեւ նպաստ եւ գերման ուսանողներու թոշակները պիտի աւելնան 20 առ հարիւր համեմատութեամբ: Ցետոյ պիտի ջնջուի գերմանական լեզուի գործածութեան դէմ հաստատուած արգելքը:

ՕՓԵՐԱՅԻ վերաբացումը տեղի կ'ունենայ այսօր, կիրակի,21 փետրուար: Նախապէս որոշուած էր չորս ամիս փակել, վերանորոգման համար, բայց 1936 Սեպտ. 13ի հրդեհին պատճառաւ, երեք ամիս եւս ուշացաւ վերաբացումը:

ԱԶԳ. ՊԱՐԳԵՒԱԽԱՂԻ Բ. շարքին վիճակահանութիւնը տեղի պիտի ունենայ մարտ 9ին:

Պ. ԺԻՒՍԹԷՆ ԿՈՏԱՐ, նախկին նախարար եւ ծերակուտական, որ վերջերս ֆրանսական գաղթավայրերը ղրկուած էր ուսումնասիրութեան համար, նշանակուեցաւ ֆրանսական ներկայացուցիչ Ժընեւի Աշխատանքի Գրասենեակին վարչական խորհուրդին:

14,000 ԲԱՆՈՒՈՐՆԵՐ գործադուլ հռչակեցին Փէօժոյի ինքնաշարժի հաստատութեան մէջ, Մոնպէլիառ, իբրեւ բողոք բանուորի մը տեղափոխութեան: Բանակցութիւններ կը կատարուին, վէճը հարթելու համար:

Հինգշաբթի օր Փարիզի ցուցահանդէսին մէջ հազարաւոր բանուորներ մէկ ժամ դադրեցուցին աշխատանքը եւ ժողովի գացին, յաւելում պահանջելու համար:

## Շնորհակալիք

Մեր սրտագին շնորհակալութիւնները կը յայտնենք Լիոնի Պատ. Ազգ. Միութեան, Հարաւային ֆրանսահայոց Առաջնորդ Գեր. Տ. Գարեգին եպիսկ. Խաչատուրեանի, Քահանայ Հայրերուն, Հայ Մամուլին, կազմակերպութիւններուն, Միութիւններուն, աղնիւ Թաղեցիներուն եւ բոլոր այն հայրենակիցներուն եւ ազգականներուն, որոնք անձամբ, նամակով եւ մամուլով իրենց ցաւակցութիւնները յայտնեցին մեր սիրեցեալ հօր, հօրեղբօր եւ ազգականին

Տ. ԱՆԱՆԻԱ Ծ. ՎՐԴ. ՀԱԲԷԼԵԱՆԻ

կսկծալի մահուան առթիւ։

Լիոն, 16 փետր. 937

Հաբէլեան ընտանիք

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ





















































Le Gérant: H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme, PARIS (13)

ունէր։ Ինչպէս միշտ, Պ. Լէօն Պլում այս առթիւ ալ չնշմարեց թէ իր քաղաքականութիւնը կը ներկայացնէ մեծամասնութեան կամքը։ Մասնաւորապէս խօսքերն ուղղելով Պ. Ֆլանտէնի, յայտարարեց թէ ինք ձախողած չի նկատեր իր փորձը։ «Ես կը կարծեմ թէ մենք իրաւունք ունինք հաստատելու թէ կացութիւնը աւելի լաւ է այսօր (ծափեր՝ ձախէն, ծիծաղներ՝ աջէն)։ Այո, կացութիւնը աւելի լաւ է այսօր։ Երկիրը կը վերագտնէ իր տնտեսական առողջութիւնը»։

Այս միջոցին անտանելի աղմուկ մը հասած էր աջերու յարուցած ժխորը։ Վարչապետը նեղսրտելով յայտարարեց.

— Եթէ պիտի չկրնամ խօսիլ, վար կ'իջնեմ բեմէն։

Ցետոյ շարունակելով, հաստատեց թէ գործազրկութիւնը նուազած է 15 առ հարիւր համեմատութեամբ եւ մասնակի գործազրկութիւնը գրեթէ անհետացած է։ Ինչ կը վերաբերի ոսկիի փախուստին, «այդ բանը տեղի չունեցա՞ւ Ֆլանտէնի եւ Լավալի նախարարութեանց օրով։ 19 միլիառ ֆրանքի ոսկի դուրս ելած էր վեց շաբթուան մէջ։ (Ֆլանտէն դիտել տուաւ թէ 19 միլիառ չէ, այլ 9 միլիառ)։ Մի՛ ուրանանք իրականութիւնը։ Հարկ է բանալ աչքերը։ Այո, փոփոխութիւն մը տեղի ունեցած է, ինչո՞ւ կ'ուրանաք։ Տեղի ունեցած է նաեւ բարոյական ինչպէս նիւթական ձեւափոխութիւն մը, որովհետեւ այս ժողովուրդը նորէն գտած է իր ինքնավստահութիւնը»։

Ապա երկարօրէն բացատրեց թէ ի՛նչ բսել կ'ուզէ առժամեայ դադար մը հռչակելով, քիչ մը շունչ առնելու համար։ «Մեր ընելիքը այն է ինչ որ արձանագրուած է Ժողովրդական Ճակատի ծրագրին մէջ։ Մենք յանձնառութիւն մը ունինք կուսակցութեանց միջեւ։ Նոր ծրագիր չկայ։ Որ եւ է նոր ծրագիր պէտք է քննուի եւ վճռուի բաղկացուցիչ կուսակցութեանց կողմէ։ Եթէ ես անհրաժեշտ գտնեմ ազգային միութեան դաշինք մը կազմել, պիտի ընեմ, բայց ես տրամադիր չեմ այդ կերպարանափոխութեան։ Հարցը քննելով ազգային տեսակէտէն, ես կը կարծեմ թէ մեր կառավարութիւնը միակ հնարաւոր ազգային կառավարութիւնն է եւ թէ Ժողովրդական Ճակատի կառավարութիւն մը մնալով է որ պիտի մնայ լիովին ազգային կառավարութիւն մը։ Մենք երբեք չենք եղած պառակտումի կառավարութիւնը։ Մենք Ֆրանսայի կառավարութիւնն ենք եւ միշտ գործած ենք իբր այդ։ Մենք կը կարծենք թէ իրաւունք ունինք, առանց պաղատելու, ֆրանսական հասարակութեան եւ աշխատանքի բոլոր տարրերուն աջակցութեան, գլուխ հանելու համար մեր գործը որ նուիրուած է արդարութեան եւ ապահովութեան»։

Այն ճառէն վերջն ալ, վիճաբանութիւնները շարունակուեցան մինչեւ կէսգիշեր։ Այս առթիւ նորէն խօսք առնելով, Պ. Ֆլանտէն յայտարարեց.

— «Վարչապետը չպատասխանեց որ եւ է քննադատութեան եւ կասկածելի է որ հանրային կարծիքը գոհ ըլլայ։ Դուք վստահ էք ձեր յաջողութեան վրայ. դէպքերը պիտի պատասխանեն, դատելով մեզ ալ, ձեզ ալ։

Արմատական խմբակցութեան ներկայացուցիչը գնահատելով կառավարութեան քաղաքականութիւնը, դիտել տուաւ թէ կարելի է քիչ մը մեղմացնել կարգ մը օրէնքներ, «ինչպէս օրինակ շաբաթական 40 ժամը, որուն գործադրութիւնը դժուար է»։

Ի վերջոյ քուէարկուեցաւ վստահութեան բանաձեւը։

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԵԿԱՄՈՒՏԻ ՏՈՒՐՔԵՐՈՒ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԵԱՆ ՎԵՐՋԻՆ ՕՐՆ Է ԱՅՍՕՐ, 28 ՓԵՏՐՈՒԱՐ։ ՄԻ ԹԵՐԱՆԱՔ, ՈՐՊԷՍԶԻ ՑԵՏՈՅ ՋՏՈՒԺԷՔ։

ՊԷՅՐՈՒԹԷՆ կը հեռագրեն թէ ազգայնականները երիտասարդական ցոյց մը կազմակերպեցին Լաթաքիոյ մէջ, Պայրամի առթիւ։ Ցոյցը հանդարտութեամբ սկսաւ, սակայն յետոյ յանգեցաւ ընդհարումի մը, զօրքին եւ Երկաթշապիկաւորներու միջեւ։ Ութ ցուցարարներ վիրաւորուեցան, մէկը ծանրապէս։

ՊՈԼՍՈՅ «ԱԶԴԱՐԱՐ»Ը դադարման դատապարտուած է կառավարութեան հրամանով, երեք շաբաթէ ի վեր։

ԶՈՒԻՑԵՐԻՈՅ կառավարութիւնը մասնաւոր զեկոյցով մը կը յայտնէ թէ Հիթլէր փետրուար 23 թուակիր պաշտօնագրով մը ամէն երաշխաւորութիւն կ'ընծայէ Զուիցերիոյ չէզոքութեան պահպանման համար, ինչ որ չէր ըրած մինչեւ հիմա։

ՍԷՆԻ ՅՈՐԴՈՒՄԸ վտանգի սահմանն ալ անցաւ երէկ։ Եթէ անձրեւները շարունակուին, կը վախցուի որ օրական 20 սանթիմ աւելի բարձրանայ։ Պաշտպանողական բոլոր միջոցները ձեռք առնուած են։ Կարգ մը արուարձաններու մէջ պարտէզները եւ մառանները ողողուած են արդէն։

Վերջին լուրերու համաձայն, Լիոնի մէջ Ռօնը հեղհեղէ կ'իջնէ, իսկ Ավինեօնի մէջ ջուրերը կը բարձրանան։

ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ հրաժարեցաւ Սպանիոյ ծովեզերքին վրայ հսկողութիւն կատարելու պարտականութենէն։

ԼՈՒՑԿԻՆԵՐՈՒՆ գինը պիտի իջնէ մարտ 1էն սկսեալ, 40 սանթիմնոցը՝ 30ի, 25նոցը՝ 20ի, 1.50նոցը՝ 1.40ի եւն.։

ՎՃԱՐՈՎԻ ԱՐՁԱԿՈՒՐԴԻ օրէնք մը կը մշակուի Անգլիոյ մէջ, հետեւողութեամբ Ֆրանսայի։ Վարչապետը շարք մը տեսակցութիւններ ունեցաւ Արհեստակցական Միութեանց վարչական խորհուրդին հետ։

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Կոմոնի «Զաւարեան» ենթակոմիտէն յանուն իր խումբերուն իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ ընկեր եւ ընկերուհի Սէրէնկիւլեաններու իրենց զաւկին՝ փոքրիկ Վիգէնի դառնակսկիծ մահուան առթիւ։

×

ՄԱՐՍԷՅԼ.— Տէր եւ Տիկին Յովհ. Տէօքմէճեան իրենց խորին ցաւակցութիւնները կը յայտնեն ընկեր եւ ընկերուհի Սէրէնկիւլեաններու իրենց զաւկին՝ փոքրիկ Վիգէնի դառնակսկիծ մահուան առթիւ։

ԽՄԲ.— Կը ցաւինք յայտնելու թէ Փետր. 25ի թիւին մէջ հրատարակուած մահազդը կը վերաբերէր այս զոյգին, բայց հեռաձայնի միջոցաւ հաղորդուած ըլլալով, տեղի տուած էր գժբախտ թիւրիմացութեան մը։






Le Gérant: H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Dameane, PARIS (13)